# ԲԱՆԱԿ ԵՆ ԳՆՈՒՄ

ՅՈՒՐԻ ԼՈՒՑԿԵՎԻՉ

Այսօր ջահել տղաներին
Մենք բանակ ենք ուղարկում:
Նրանց պարող ոտքերի տակ
Տան հատակն է դղրդում:

Բարով գնան տղաները
Եվ բանակից բարով գան,
Մի արև է ամեն մեկը
Մի գարուն է խնդության:

Կարմրում են աղջիկները
Տղաների կատակից,
Ինչպես գաթան է կարմրում
Վառարանի կրակից:

Ու գալիս է Վանյա քեռին:
Հենակներն են ճռճռում:
— Հե՜յ,— ասում է,— պիտի պարեմ,
Մի տե՜ղ բացեք ձեր քեռուն:

Թեև այսօր ես չեմ կարող
Քայլել ձեզ հետ շարքերում,
Բայց տվել եմ հայրենիքին
Ես մարտական սուրբ երդում:

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՐԶԱՅԵԼՅԱՆԻ






Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ՆԱՄԱԿ

ԻԳՆԱՏ ՄԱՄՅԱՆ

Հարցնում ես՝ ցուրտ հյուսիսում,
Ձյուների մեջ, չե՞մ մրսում:
Ցուրտ է, այո՜, սառնամանիք,
Ձյունն է ծածկել դուռ ու տանիք,
Բուք են շնչում ծառերն անես,
Բայց չե՜մ մրսում, զինվոր եմ ես:
Կա չմարող մի ջերմություն,
Որ ապրում է սրտերի մեջ
Ու միշտ տաք է պահում մարդուն
Բոլո՜ր-բոլոր ցրտերի մեջ.
Դա մեծ սերն է հայրենիքի,
Որ մեղմում է ցուրտը բքի:
Մենք հսկում ենք սիրով այդ տաք
Սահմանները մեր անխորտակ,
Որ ձյուներին աստղափաթիլ,
Չխառնվի... արյան կաթիլ:

«ՊԻՈՆԵՐ»-Ի ՓՈՍՏԻՑ

# ՀՈՒՇԱՂԲՅՈՒՐԻ ՄՈՏ

Հպարտորեն կանգնած է նա զինվորին հատուկ կեցվածքով և անձայն ունկնդրում է ջրի քչքչոցին:

Մի ծեր կին է մոտենում աղբյուրին: Խոնարհվում է, սափորը դնում ջրի տակ, ապա հայացքը գամում հուշարձանի վիմագրությանը... Ես նրա աչքերում մշուշ եմ նկատում: Ինքս էլ եմ տխրում: Կինը նայում է ինձ ու, չգիտես ինչու, ժպտում է: Դողդոջուն ափով ջուր է վերցնում և, շաղ տալով հուշաղբյուրն ասես իրենց ուսերին պահող ծաղիկների վրա, բարձրաձայն մտածելու պես ասում է.

— Որդիս ծաղիկներ շատ էր սիրում...

Ես ակնածանքով ցանկանում եմ զինվորի մոր ձեռքից վերցնել սափորը: Ծեր կինը բարեհամբույր նայում է ինձ:

— Ջավա՛կս,— ասում է,— այս աղբյուրի ջուրը ծանրություն չունի...

Նրանից հետո մի փոքրիկ աղջիկ է մոտենում հուշաղբյուրին: Սա շրթունքները ջրին է մոտեցնում առանց խոնարհվելու: Ապա նայում է գլխավերևի տարեթվերին.

— Վա՜հ,— զարմանում է,— ինչպե՞ս կարելի է 1941-ից հանել 1945:

Ես ժպտում եմ: Թվում է՝ փոքրիկի ժապավենը անամպ երկնքի մի պատառիկ է:

«Այսպիսի հանումից ի՞նչ է ստացվում»,—ասես հարցնում են աղջկա անամպ աչքերը:

— Անամպ երկի՜նք,—պատասխանում եմ բարձրաձայն:

Աղջիկը թռվռալով հեռանում է. այնպես թեթև, կարծես զինվորի մոր ասած թեթև ջուրն է:

Հայացքս վերադառնում է հուշաղբյուրին:

Կռանում եմ ջրի վրա ու երկա՜ր-երկար համբուրում այն: Ես ծարավ չեմ: Արածս հուշաղբյուրի առջև խոնարհվե՜լ էր նշանակում:

*ԶԱՎԵՆ ԱԶԻԶՅԱՆ*
*Մարտունու շրջան, գյուղ Գեղհովիտ*



*ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.—Հեռախոսով կապվեցինք Ստեփանակերտի հետ և ահա թե ինչ իմացանք Անահիտի պապիկի մասին.*

*Նա՝ Սուրեն Ներսեսի Բաղդասարյանը 1935—39 թվականներին եղել է Ստեփանակերտի շրջանի Բալուջա գյուղի դպրոցի դիրեկտորը: Այնուհետև մեկնել է բանակ՝ իր զինվորական պարտքը հայրենիքի նկատմամբ կատարելու: Դեռ չզորացրված, պայթել է պատերազմը: Նա եղել է Օդեսայի պաշտպաններից, կռվել է Լվովի պատերի տակ, Ուկրաինական գյուղերում: Եվ հերոսաբար զոհվել է Կիևի պաշտպանության ժամանակ:*

# ԿԱՐՈՏ

Հորս աշխատասենյակի պատին փակցրած լուսանկարից մեկ է ժպտում միջահասակ մի տղամարդ: Իմ պապիկն է: Ամեն անգամ, երբ նայում եմ նրան, տրխրում եմ, մտածում՝ որտե՞ղ մնաց նա...

Նա պատերազմից չի վերադարձել:

Տարիներ են անցել, գարուններ են հաջորդել ձմեռներին, բայց իմ պապիկը չի վերադարձել...

Ու ես մենակ նստած մտածում եմ. ձմեռը կանցնի, գարունը կգա, ծառերը կծաղկեն, կվերադառնան թռչունները, բայց իմ պապիկը...

Ի՜նչ երջանիկ կլինեի, եթե իմ պապիկը վերադարձած լիներ:

Կարոտել եմ, պապի՜կ ջան, կարոտել եմ քեզ:

*ԱՆԱՀԻՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*
*Ստեփանակերտ, գյուղ Բալուջա,*
*5-րդ դաս. աշ.*

# ՄԻ ԵՐԿԱՐ, ՄԻ ԿԱՐՃ ԱՐՁԱԿՈՒՐԴ

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գլուխ երրորդ

## ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ԳԻՇԵՐ

Մութն ընկնելուն պես երկինքը կարծես պատռվեց: Ի՜նչ անձրև է տեղում, ի՜նչ անձրև: Բանավանի միջով հոսող գետը դուրս է եկել ափերից ու այնպես է մռնչում, կարծես ուր որ է սրբել-տանելու է ողջ տեղամասը՝ տնակներով, կառույցներով ու երկինք միխրճված հորանով:

Վիտյան նստել է պատուհանի մոտ ու ձևացնում է, թե գիրք է կարդում: Ժամը ութն անց կես է: Դեռ կես ժամ կա: Երկտողը, որ նա պահել է բաճկոնի գրպանում, այրում է նրան ու հաճելի տագնապով լցնում էությունը: Եվ կարծես նրան նյարդայնացնելու համար, տարերքն ավելի ու ավելի է սաստկանում: Երկինքը, ամպերը, գետը ոռնում են միաձայն ու սարսափազդու:

Հայրիկը գլխարկը թափով դրեց գլխին ու մոտեցավ դռանը: Գյուղում էլ, երբ տրամադրությունը վատ էր լինում, նա սուսուփուս գլխարկը քաշում էր գլխին ու գնում գյուղամեջ՝ ջրհորի մոտ: Բայց, հիմա, նկատելով տեղատարափը, նա դռների մեջ կանգ առավ:

— Ուր այս եղանակին, — մտահոգվեց մայրիկը:

— Գնամ տեսնեմ ինչ են անում, — համենայն դեպս չնահանջեց հայրիկը, — թունելում բոլոր պոմպերը միացրել են, բայց ջրի կեսն էլ չեն կարողանում դուրս մղել: Որ այսպես շարունակվի...

Դուռը շրխկաց նրա ետևից:

Իննին տաս է պակաս:

— Հիմար գիրք է, — շինծու վրդովմունքով առջևի գիրքը մի կողմ հրեց Վիտյան, — գնամ տեսնեմ Նարեկը հետաքրքիր ի՞նչ ունի:

Երբ խոսքը գիրք կարդալու մասին էր, մայրիկը չէր հակառակում, Վիտյան դա հաստատ գիտեր: Մայրն իր ձեռքով հագցրեց Վիտյային, տաք վկնոցը լավ փաթաթեց պարանոցին, և տղան փողոց նետվեց:

Տեղատարափը շարունակվում էր նույն ուժով և քամին անձրևի շիթերն ուղղակի ծեփում էր նրա դեմքին: Հորանի մոտ ոտնաձայն լսելով, նա բարձրացրեց գլուխը: Նարեկն էր: Վիտյան ուզեց ձայն տալ, բայց հետո մտածեց, որ նյութի չի կարելի: Երկտողում նրա մասին ոչինչ չէր գրված: Լքված խրճիթի պատուհանները մութմութ էին: Տղաները անվստահ նայեցին իրար ու հրեցին դուռը: Քամին նրանց ետևից ներս խուժեց ու սկսեց ցնցել տնակի ճռճռացող պատերը: Անկյունում լույս վառվեց: Մոմի բարակ, պլպլացող լույս, որ հազիվ էր դիմանում քամուն: Նարեկը ձեռքը գրպանը տարավ ու վճռական քայլեց դեպի լույսը: Մոմի մոտ, կոտրված արկղի վրա, նստել էր Կատյան:

— Դու ի՞նչ ես անում այստեղ, — հարցրեց ձեռքը գրպանից հանեց Նարեկը:

— Գնա՛ այստեղից, — վրա տվեց Վիտյան: — Մենք գաղտնի ժողով ունենք:

Կատյան նստել էր ու ձայն չէր հանում:

— Ի՞նչ է, չե՞ս հավատում, — կարդա՛, — արհամարհանքով ու հպարտ երկտողը Կատյային տվեց Նարեկը:

Կատյան ի միջի այլոց նայեց երկտողին ու ասաց.

— Դա ես եմ գրել:

— Ինչո՞ւ, — վայրացավ Նարեկը:

— Որպեսզի իմանաք, — փակեք դուռը:

— Գուցե ժամապահ էլ կանգնեցնենք, — ծաղրեց Վիտյան:

— Մի խոսքով, ես գնացի, — ձեռքը թափ տվեց Նարեկը: — Ես աղջիկների հետ զբաղվելու ժամանակ չունեմ: Ջի՛մմի, իմ հավատարի՛մ շուն, որտե՞ղ ես:

Բայց մինչ նա դուրս կգար, Կատյան մարմնով փակեց դուռը:

— Դուք այստեղից ոչ մի տեղ չեք գնա: Ի վերջո տղամա՞րդ եք, թե՞ չէ: Մեր հայրերը այնտեղ, գետնի տակ չարչարվում են, իսկ մե՞նք...

— Ի՞նչ մենք, — կանգ առան տղաները:

— Իսկ մենք, — բնծիծաղ տվեց Կատյան, — անհոգ ու անբան թրև ենք գալիս սարերում ու ծաղրում աղջիկներին:

— Բա ի՞նչ ես ուզում անենք, — ուսերը թոթվեց Վիտյան, — մեկ մեծերը ոչ միայն թունելախորշ, այլև հորանին մոտ չեն թողնում:

— Տղանե՛ր, հասկացե՛ք, — Կատյան ջոկատի խորհրդի նախագահի տոնով սկսեց խոսել, — կարևորը ցանկությունն է, եթե մենք որոշենք օգնել մեր հայրերին, անելու բան միշտ էլ կգտնվի:

Լսվում էր, թե ինչպես է մրրիկը ճարճատյունով ցնցում լքված խրճիթի տանիքը և մեկ էլ մումն էր ինքն իրեն մրթմրթում:

Երեքն էլ լռեցին:

---

Սկիզբը՝ 1976թ. № 12 և 1977թ. № 1-ում

— Ես առաջարկ ունեմ,— ոտքի կանգնեց Կատյան, բայց զգալով, որ ժողով չէ, նորից տեղը նստեց: Տղաները նույնպես նստեցին, ամեն մեկը՝ մի արկղի վրա:— Դուք ինքներդ էլ գիտեք, որ մեր հայրերի տրամադրությունը շատ վատ է: Մինչև թունելախորշից ջրերը դուրս մղվեն, նրանք փաստորեն անգործ են և այդ պատճառով նյարդայնանում են: Մենք շատ կարևոր գործ արած կլինենք, եթե նրանց համար ուրախ երեկույթներ կազմակերպենք, փոքրիկ պիեսներ բեմադրենք, երգենք ու պարենք:

— Երգենք ու պարե՞նք,— ծաղրեց Նարեկը,— ավելի լուրջ բան մտածեիր:

— Այո՛, ավելի լուրջ զբաղմունք,— մտախոհ ասաց Վիտյան:

— Մտածել եմ... այդ էլ եմ մտածել,— Կատյան ձայնը բարձրացնելով, լռեցրեց նրանց:— Դուք գիտեք, որ նախ երկրաբաններն են բարձրացել այս լեռները, ուսումնասիրություններ կատարել: Բայց ովքե՞ր են եղել նրանք, հիմա ո՞վ գիտի նրանց անունները: Ճիշտ այդպես հիսուն, հարյուր տարի հետո մարդիկ կգան, կհիանան թունելով, այն աշխատանքով, որ կատարվել է այսքան դժվարին պայմաններում, գետնի տակ, բայց չեն իմանա թունելը փորողների անունները, ոչ մի պատկերացում չեն ունենա այն վտանգների մասին, որին ենթարկվելով, գործն առաջ էին տանում նրանք: Դրա համար ես առաջարկում եմ, մեր ամառային արձակուրդը նվիրել Արփա-Սևանի պատմության ըստեղծմանը: Գնենք ալբոմ, գրենք, թե ինչպես է սկսվել կառույցը, ովքեր են աշխատել, ինչ արգելքներ են հաղթահարել: Վերջում մենք այդ ալբոմը կնվիրենք պատմության թանգարանին:

— Մենք կարող ենք նաև լուսանկարել առաջավոր թունելագործներին,— շարունակեց Վիտյան՝ տարված Կատյայի առաջարկով,— ես գունավոր տուշով կնախշազարդեմ վերնագրերը:

Կատյան գոհ ժպիտով նայեց Վիտյային: Իսկ և իսկ ջոկատի խորհրդի նախագահի պես: Բայց



երկուսի ժպիտն էլ սառեց դեմքներին, երբ նրանց հայացքը ընկավ Նարեկի վրա: Նա գլուխը խոնարհած, լուռ ու մռայլ ինչ-որ բան էր մտածում: Զգալով ընկերների հայացքը, մաքրեց կոկորդը:

— Ես չգիտեմ,— ասաց նա,— դուք հայոց պատմությանը ծանո՞թ եք, գիտե՞ք Եղիշե անունով մեր պատմիչի մասին, որը հազար հինգ հարյուր տարի առաջ գրել է հայերի ու պարսիկների ճակատամարտի մասին: Եթե նա այդ չաներ, մենք չէինք իմանա քաջ Վարդանի ու մյուս հերոսների մասին: Բայց գիտե՞ք Եղիշեն երբ է գրել իր պատմությունը: Նա չի նստել ու պատմություն գրել այն ժամանակ, երբ ճակատամարտի դաշտում որոշվում էր մեր ժողովրդի բախտը: Ճակատամարտի ժամանակ նա կռվել է զենքը ձեռքին և հետո միայն մտածել ապագա սերունդներին հաղորդել իր տեսածը:

Դրսում Ջիմմին երկար ու կատաղած սկսեց հաչել: Երեխաները մի պահ սակվեցին, հետո Նարեկը թափ տվեց ձեռքը.

— Ուշադրությո՛ւն մի՛ դարձրեք, երևի բանավանի մոտով գայլ անցավ: Հա, մենք խոսում էինք...

Վիտյայի առաջարկը, իհարկե, վատ չէ, բայց պատկերացնո՞ւմ եք, թե ինչ կմտածեն մեր մասին ապագայում, երբ կարդան ալբոմները: Մեզ չե՞ն նախատի, որ մենք նստել ու նայել ենք, թե ինչպես են տանջվել մեր հայրերը գետնի տակ ու հետո նրանց մասին գեղեցիկ ձեռագրերով, գեղեցիկ նախադասություն ենք գրել:

— Ա՜յ, եթե ծերունի Խոսաբիչը այստեղ լինե՛ր,— ծոր տվեց Կատյան,— ես նրան կխնդրեի, և նա մի գիշերում կփորեր ողջ թունելը: Պատկերացնո՞ւմ եք առավոտյան ինչ տեղի կունենար, երբ մեծերը վարթներին ու տեսներին, որ թունելի 48 կիլոմետրը փորված պատրաստ է:

Հակառակի պես մութը աչք կուրացնող ծուխ արձակեց ու հանգավ:

— Ըհը՜,— մթության մեջ լսվեց Վիտյայի ձայնը,— Խոսաբիչը ուր որ է կգա:

— Եկեք հույսներս Խոսաբիչի՞ վրա չդնենք,— ոգևորությամբ շարունակեց Նարեկը:— Պատանի տեխնիկների կայանում վերջին պարապմունքի ժամանակ մեր ղեկավարը օտար լեզվով մի հանդես բերեց, որի մեջ հրաշք մեքենայի նախագիծ կար: Ղեկավարի՛ ասելով, այդ մեքենան մեն-մենակ կարողանում է թունել փորել ու ապառն էլ հանել դուրս: Ինչքան ուզում է՝ տեղանքը բարդ լինի. Մարդուն մնում է միայն նստել մաքուր առանձնասենյակում ու ղեկավարել մեքենայի աշխատանքը:

— Դա խսկապես հրաշք սեքենա է,— հոգոց հանեց Կատյան:— Բայց մեզ ո՞վ կտա:

— Ոչ մեկն էլ չի տա,— անսպարկելի տոնով ասաց Նարեկը: Մենք պիտի ստեղծենք:

— Մե՛նք, ինչպե՞ս:

— Շատ հասարակ,— չգիտես ինչու ձայնը ցածրացրեց Նարեկը,— հենց վաղը կգնամ Երևան ու կբերեմ այդ ամսագիրը: Գործիքներ կճարենք և կպատրաստենք մեզ անհրաժեշտ մոդելը:

— Ի՞նչ մոդել,— վարանեց Կատյան:— Դու թունել փորող մեքենայի մասին էիր խոսում:

Նարեկը ներողամիտ ժպտաց:

— Մենք հո մեքենան չե՛նք ստեղծելու,— մութ սենյակում նրա ձայնը դողաց:— Մենք միայն մոդելը կստեղծենք, իսկ հետո մեր հայրիկները դրա հիման վրա իսկական մեքենան կպատրաստեն:

— Թեկուզ մոդելը,— Վիտյայի ձայնը կասկածանքով լի էր,— եթե դա մեր պայմաններում հնարավոր է անել, մեր հայրիկներն արած կլինեին, այսպես չէին չարչարվի:

— Բայց գուցե այդ ամսագիրը նրանց ձեռքը չի ընկել:

— Ֆկրադ թվում է...

— Մենք, պատանի տեխնիկների կայանում ավելի բարդ մոդելներ ենք ստեղծել:

Արդեն կես գիշեր էր: Բանավանի բոլոր լույսերը մարել էին: Երեք ընկեր կողք-կողքի տուն էին վերադառնում ու լսում, թե ինչպես է մրրիկը կաղկանձում քարանձավներում: Բանավանը քնած էր խաղաղ քնով: Եվ, իհարկե, քնած թունելագործներից ոչ մեկի մտքով չէր անցնում, թե քիչ առաջ ինչ հրաշալի գաղափար ծնվեց աստղերին մոտ, շատ մոտ գտնըվող լքված խրճիթում:

(Շարունակելի)

## ՍՊԱՍՈՒՄ

*ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ*

Փաթիլն ափիս մեջ
Իր կյանքը ապրեց
Ու դարձավ արցունք
Երկնային աչքի,
Սակայն այն սիրով
Պահ տվի հողին,
Որ մի օր դառնա
Ցողիկը ծաղկի...
Հետո փաթիլներ
Եկան կիտվեցին
Ձեռքիս ափի մեջ,
Հետո մի լճակ
Ծնվեց արցունքից
Երկնային աչքի...
Ու ես լճակը
Պահ տվի հողին,
Որ գարուն լինի,
Որ ծաղիկները
Բույրերով ծաղկեն...

## ԵՂՅԱՄԵ ԾԱՂԻԿՆԵՐ

*ՍՏԵՓԱՆ ՄՈՎՍԻՍՅԱՆ*

Ձեր ծնունդը, ծաղիկնե՛ր,
Չեղավ մայր հողում,
Դրա համար սիրտն է ձեր
Տաք շողերից դողում:
Ձմեռն անցնի, ծաղիկնե՛ր,
Դուք կարոտից նրա,
Կդառնաք լուռ արցունքներ
Պատուհանի վրա...

*Նկ. ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ*




ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ



Ձյուն է նստել Արարատյան դաշտում, գետինը սառել, ծառերն անշարժացել էին, միայն Սև Ջուրն էր, որ չէր սառել:

— Չի սառչում, այդպես է,— բացատրում էր խոսակիցս,— քանի՜, քանի՜ դարեր են ապրել այս տեղերում իմ պապերն ու նրանց պապերը, ես էլ հասակս առած մարդ եմ, ո՛չ տեսել, ո՛չ լսել եմ նրանցից, որ Սև Ջուրը սառչի: Այս ջուրը չի սառչում:

— Մեր գետերն առհասարակ չեն սառչում,— ասացի ես:

Այսպես զրուցելով անցնում էինք Սև Ջրի ափով: Ցուրտ էր, սառը քամի էր փչում, թանձր մառախուղ էր նստել գետի ափերին, ջրից գոլորշի էր բարձրանում:

— Տեսնո՞ւմ ես, կարծես տաք ջուր լինի: Խորն է, հատակը ճահճոտ, այստեղ ընկնողը էլ դուրս չի գա, նենգ է, դաժան է Սև Ջուրը:

Նա պատմում էր, ես նայում էի գետին՝ սովորական գետ էր, հանգիստ ու ծանր հոսքով և ոչինչ սարսափելի ու դաժան բան չկար նրա տեսքի մեջ: Վաղ առավոտից դաշտ էինք դուրս եկել որս անելու և դեռ ոչ մի կենդանի էակի չէինք հանդիպել:

Ձմեռային սառն արևի կարմիր գունդը արդեն շտապում էր մայրամուտ: Ագռավներ անգամ չերևացին այդ «տաք ու դաժան» գետի ափերին:

— Այստեղ որս անելու տեղ չէ,— շշնջացի ես,— օրն էլ արդեն վերջանում է. միայն մրսեցինք և ուրիշ ոչինչ:

— Այստեղ մի ժամանակ բադեր և նապաստակներ շատ էին լինում,— ասաց ուղեկիցս,— հիմա որսորդներն այնքան են շատացել, որ մի բադին՝ չորս, մի նապաստակին հինգ որսորդ է ընկնում:

Արևը մոտեցավ Կողբա սարին, փեշերը կախ արեց սարի ետևն իջնելու համար:

— Վաղը ցուրտ կլինի,— ասաց ուղեկիցս,— տե՛ս, ինչ կարմիր է արևը:

Կանգնած նայում էինք արևի արնագույն գնդի



մայրամուտը: Հանկարծ ինչ-որ բան ստվերի նըման անցավ մեր գլխավերևով և շրմփալով ջուրն ընկավ:

— Բադ էր,— ասաց ընկերս, և մենք կռացանք, հրացաններս իջեցրինք ու քայլեցինք դեպի ջուրը: Մռայլ էր գետակը, ինչպես որ սև էր նրա ջուրը, և ինչ-որ ճենճ խորություն էր զգացվում նրա դանդաղ, ծանր հոսքում:

— Ձմեռվա կեսին ի՞նչ գործ ունեն այստեղ բադերը,— հարցրեցի ուղեկցիս, որն իրեն հին որսորդ էր համարում:

— Կա՜ն, այստեղ ձմեռող բադե՛ր կան,— ասաց նա,— այս Սև Ջուրը ուրիշ ջրերի նման չէ, սրա մեջ հրեշներ էլ կան:

Մոտեցանք եղեգնուտներին: Ջուրը մրով սևացրած ապակու պես փայլեց իրիկնամուտի լույսերում: Նրա վրա, ափին մոտ լողում էր բադը: Մենք ուղղեցինք մեր հրացանների փողերը նրան և կամաց մոտեցանք: Բադը լողում էր ջրին հակառակ, ափին մոտ, ինչպես երևում էր, գիշերելու տեղ էր փնտրում: Նա մենակ էր, նրա երկար ստվերը ձըգվել, խառնվել էր եղեգնուտների ստվերներին: Մենք էլի մոտեցանք, ապա կանգ առանք և նշան բռնեցինք: Մի վայրկյան հետո մի քանի տեղից կրակի բոցերը խրձերով թռան դեպի բադը: Անհավոր դղրդոցի մեջ ոչինչ չնկատեցինք, քիչ հետո միայն տեսանք սպանված բադի խղճուկ մարմինը, որ արդեն գալիս էր ջրի հոսանքի հետ: Սև Ջրի հակառակ ափից դեպի բադն էին քայլում երկու որսորդ, այս ափից մենք էինք քայլում: Պարզվեց, որ չորս հոգով համարյա նույն պահին կրակել էինք խեղճ բադի վրա: Երբ որսորդներից մեկի շունն ափ հանեց բադը և մենք քիչ հետո մոտեցանք իրար, տեսանք, որ բադի վրա միս չէր մընացել՝ քրքրվել ու ջարդվել էր մեր կոտորակներից: Բադը նորից ջուրը նետեցինք:

Արևն իջել էր լեռան ետևը, սպասում էինք լուսնյակի երևալուն: Եղանակը ցրտում էր, վերարկուներիս օձիքները բարձրացրինք:

Խաղաղ ու հանգիստ էր գիշերը, շուտով լուսինը դուրս եկավ, լուսավորեց եղեգնուտները, լուսավորվեցին մոտակա գյուղերը և Սև Ջուրը փայլեց սադափի նման: Քնած էր Արարատյան դաշտը, քնած էին մարդիկ, միայն մեր ոտնաձայներն էին, որ խախտում էին գիշերվա անդորրը:

Մոտակա գյուղի տներից մեկի լուսամուտում ճրագ էր վառվում, որովհետև որս չկար, մենք հաճախ էինք նայում պատուհանի այդ լույսին, նա մագնիսի նման քաշում էր մեզ դեպի ինքը, և մենք էլ չզգացինք, թե ինչպես ատտինանաբար մոտեցանք գյուղին, մոտեցանք լույսին և կանգ առանք ձյան վրա գցած նրա ճառագայթի մոտ:

— Երևի հիվանդ կա տանը,— ասաց ընկերս,— լույսը չեն մարել: Ես այս գյուղում եղել եմ շատ տարիներ առաջ, ուսուցչություն եմ արել: Փոքր էր գյուղն այն ժամանակ, ավերված. խմելու ջուրը հորերից էին հանում:

Ցուրտ էր, երկար կանգնել մի տեղում չէր կարելի:

— Գնանք եղեգնուտները,— ասացի ուղեկցիս,— գուցե որևէ բան պատահի:

— Լուսադեմին, միայն լուսադեմին կարելի է սպասել բադերի թռիչքին, այն ժամանակ էլ կմտնենք եղեգնուտներին,— ասաց ընկերս:

— Իսկ հիմա՞, հիմա ի՞նչ անենք:

— Ես այստեղ մի հին, կորած ընկեր ունեմ, գնանք նրա մոտ, մի քիչ էլ տաքանանք, լուսադեմին դուրս կգանք ու կմտնենք եղեգնուտներին:

Ես չառարկեցի, որովհետև որսի դուրս գալն ինքնըստինքյան նույն անմտությունն էր, ինչ որ գիշերվա կեսին մարդկանց տուն մտնելը: Ես, իհարկե, համաձայն էի ամբողջ գիշերը շրջել Սև Ջրի ափերին թեկուզ և առանց որս անելու: Ես սիրում



էի այդ տեղերը դեռ մանուկ հասակից, ես ապրել եմ Սև Ջրի ափերին և շատ բան հարազատ ու սիրելի էր ինձ: Հիմա մենք դեռ զրուցում էինք, երբ ընկերս նկատեց, որ տնակի ծխնելույզից ծուխ բարձրացավ:

— Վառարանը վառեցին,— ասաց նա,— արթնացան:

Եվ, իսկապես, քիչ հետո, վերարկուն ուսերին, մի մարդ մոտեցավ մեզ.

— Բարև՛ ձեզ, բարեկամնե՛ր,— ասաց նա,— որսորդնե՞ր եք, նե՛րս համեցեք, ցուրտ է:

— Ո՛չ, ո՛չ, շնորհակալ ենք,— շտապեցի ես,— երևի մենք ձեզ անհանգստացրինք:

— Ի՞նչ եք ասում: Ես դեռ անկողին չեմ մտել: Նե՛րս եկեք,— ասաց և առաջ ընկավ, մենք նրա ետևից գնացինք ու մտանք փոքրիկ տնակը:

— Համեցե՛ք, համեցե՛ք, մինչև լուսաբաց դեռ ժամանակ շատ ունեք:

— Մենք ձեզ նեղություն ենք տալիս,— նորից ասացի ես:

— Ի՛նչ նեղություն, ի՛նչ բան,— ասաց մարդը և թեյամանը դրեց վառարանին: Հետո գնաց մյուս սենյակը, հաց ու պանիր բերեց, թթու, օղի:

— Այս ի՞նչ բան է, ինչո՞ւ եք այսպես անհանգստանում այս կես գիշերին, ոչինչ հարկավոր չէ:

Մենք շատ անհարմար զգացինք և ցանկանում



*Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*

էինք անմիջապես հեռանալ, բայց չկարողացանք: Տանտերը մեկ-մեկ դուրս էր գալիս տնից և իր հետ նոր մարդիկ էր բերում, բոլորն էլ որսորդներ էին և սպասում էին լուսադեմին, որ եղեգնուտները մտնեն: Ծանոթացանք, շատերի հետ հին ծանոթներ դուրս եկանք: Երկու ժամ հետո տնակը լցվեց որսորդներով: Ասում էինք, խոսում, ամեն մեկը մի բան էր պատմում: Նրա պատմածի վրա ուրիշները հիշում էին նույնպիսի ավելի հետաքրքիր դեպքեր: Իսկ դրսում լույսը բացվել էր արդեն,



ծխում էին գյուղի բոլոր ծխնելույզները: Բադերը վաղուց էին կատարել իրենց թռիչքները և արդեն ապահովապես վայրէջք կատարելուց հետո, սնվում ու ննջում էին եղեգնուտների խորքերում, որսորդների աչքերից հեռու: Տանտերը գոհ էր, նա հասել էր իր նպատակին, այս անգամ էլ էր նա իր խրճիթն հավաքել որսորդներին, դրանով հնարավորություն տվել վայրի բադերին հանգիստ ու խաղաղ գիշերել, որ մեկ օրով ևս երկարի նրանց կյանքը: Երբ հրաժեշտ էինք տալիս տանտիրոջը, ես ասացի.

— Մի ժամանակ այստեղ այնքան բադ կար, որ մենք նրանց վրա քարեր ու փայտեր էինք նետում, և պատահում էր, որ խփում էինք:

— Այո՛, եղել է այդպիսի ժամանակ: Բայց այն ժամանակ այսքան շատ որսորդներ չկային: Հիմա անթիվ և անհամար են որսորդները, հիմա նրանք գրում են թերթերում, թե պետք է պահպանել բնությունը, կենդանական աշխարհը, ձկներին, իսկ իրենք գիշեր ու ցերեկ ընկած են այդ կենդանիների ետևից: Ի՞նչ գործ ունեք այս ձմեռվա կեսին եկել եք, թե բադեր ենք որսում: Հին ժամանակ ձմեռը բադերի ետևից չէին ընկնում, նապաստակ էին խփում կամ աղվես: Հիմա ձեզ համար մեկ է, ինչի պատահեք՝ սպանում եք:

— Դուք, ի՞նչ է, գիշերները չե՞ք քնում,— հարցրեցի ես:

— Այո՛, չեմ քնում, ես ցերեկներն եմ քնում: Ես ճրագս վառ եմ թողնում, ծխում է ծխնելույզս, ես գիտեմ, որ ծուխը և կրակը դեպի իրենց են քաշում մարդկանց, իսկ ձմեռվա կեսին, այս ցուրտ գիշերներին միայն որսորդները կարող են հայտնըվել եղեգնուտներում, ես նրանց եմ գայթակղեցնում, և նրանք գայթակղվում, մոտենում են լույսին: Ինչպես տեսնում եք, ես չեմ սխալվում: Ես էլ հին որսորդ եմ, պահում եմ նրանց մինչև արևը դուրս է գալիս, իսկ այն ժամանակ բադերին այլևս գտնել չի լինի:

Մենք զարմացանք այս հին որսորդի հնարամտության վրա և, ճիշտն ասած, ուրախացանք, որ այսքան դժվարին միջոցներով, բայց կարողանում է ինչ-որ չափով փրկել բադերին որսորդներից: Արևն արդեն բարձրանում էր լեռան փեշից: Սըվսըվում էին արթնացած եղեգնուտները, Սև Ջուրը սպիտակին էր տալիս: Ինչ-որ տեղից լսվում էր մեզ անծանոթ թռչունի կանչը: Մենք նայեցինք իրար, ժպտացինք մեղավոր ժպիտով և լուռ քայլեցինք դեպի բանուկ ճանապարհը՝ Երևան մեկնելու համար:

*ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ*

## ՁՅՈՒՆՈՏ ՓՈՂՈՑՈՎ ԳԱՐՈՒՆՆ Է ՔԱՅԼՈՒՄ

Հեռու աշխարհից ամպերը եկան
և հոգնությունը իրենց թևերի
փաթիլների պես
թափեցին խաղաղ
դաշտերի վրա:

Դաշտերից արձակ
փոքրիկ տները ծխե ամպեր են
ուղարկում երկինք
և տաքուկ խոսքեր
փսփսում իրար:

Դեռ անտառի մեջ
կկուն չի երգել,
և ծաղիկները՝ սերմերի խորքում,
չեն հիշում անգամ
բուրմունքը իրենց:

Ձյունից ծերացած փողոցի միջով
գարունն է քայլում
աղջնակի պես,
և սայթաքում են ոտքերը նրա
մերկասառույցից:

*Նկ. ՍԱՄՎԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

## ՁՆԾԱՂԻԿՆԵՐԻ Ի՜ՆՉ ՏԵՂԱՏԱՐԱՓ ԿԼԻՆԻ ԴԱՇՏՈՒՄ

Քաղցած ծառերը
իզուր են հողում փնտրում քաղցրություն,
փաթիլների մեջ ծաղկաթերթերը
գունատ են ու լուռ:

Ջուր են ճյուղերը
քամուց աղերսում լույս ու ջերմություն
փետրվարի մեջ ձյունախառ քամին
դաժան է ու չար:

Արագիլները, ո՞վ գիտի, հիմա
որ երկնքում են բարություն ցանում.
ձմռան ծառերը
տենդոտ օրերն են հիշում հունիսի
և իրիկնային տաք քամիները,
որոնք անցնում են հուլիսի միջո՛վ:

Գունատ ծառերը փետրվարի մեջ
ձյունով են ծածկում
մերկությունն իրենց.
Դու չես էլ զգա, թե ներշնչանքը
ձնծաղիկների ի՜նչ տեղատարափ
կթափի դաշտում,
երբ արևային սերը արթնանա...

# ԴԱՍԸ

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Արեգակն արդեն մոտենում էր միջօրեի գծին, երբ Ռուշուան զարթնեց։ Սկզբում նա չհասկացավ, թե ինչու է այդպես շոգ և, մորթե վերմակը մի կողմ հրելով, քնաթաթախ հորանջեց։ Ապա ալարելով վեր կացավ տեղից, և արևի կուրացուցիչ շողերն անսպասելիորեն դիպան նրա աչքերին...

— Արեգա՛կ պայծառ...— մի պահ նա ասես ցանկանում էր սկսել ցերեկային լուսատուի փառաբանումը, սակայն անմիջապես էլ կիսատ թողեց իր խոսքը, հասկանալով, որ ուշացել է Ծեսից։— Պայծա՛ռ արև...— կրկնեց նա, մտածելով, որ ամենազոր արևը չի ների։

Գետինը ճաքճքել էր չորությունից։ Ջուլարանից քիչ հեռու, դեպի ավանի կողմը, չորացած հողակոշտերի մեջ խաղում էին մի քանի փոքր երեխաներ։ Նրանց մերկ մարմինները բրոնզագույն էին դարձել արևի կիզիչ ճառագայթներից։

— Արևն ուժ տա ձեր ձեռքերին ու մտքին,— մոտենալով, Ռուշուան բարձրաձայն ողջունեց վարպետներին։

Նրանք պատանու բարևին պատասխանեցին անսքող դժգոհությամբ։ Մետաղագործ վարպետներից ոչ մեկն այդպիսի ուրիշ դեպք չէր հիշում։ Վարպետն ուշացել էր Ծեսից, և նրանք բարկացած էին Ռուշուայի վրա։ Եվ չնայած դրան, նրանք չըգիտեին այն պատիժը, որ նա պետք է կրեր։

Ռուշուան գլխահակ կանգնեց Արիգիի դիմաց։

— Ես խախտել եմ վարպետների ընտանիքի օրենքը։— Նա նայում էր հալված մետաղին։— Այս առավոտ ես չեմ ողջունել Արեգակին...

Արիգին մի պահ անխոս նրան էր նայում, ապա քայլեց դեպի քարե մեծ նստարանը։ Ռուշուան հետևեց նրան։

— Ես արթնացա, երբ արևն արդեն վաղուց բարձրացել էր լեռներից,— շարունակեց պատանին։

— Նստի՛ր,— ասաց ծեր վարպետը, ինքը նստելով։

Սպիտակ, երկար մազերի ու մորուքի շրջափակման մեջ Արիգիի դեմքը դարչնագույն էր թըվում։ Ռուշուան հայացքը չէր կտրում հնոցից հոսող մետաղից։

— Ես գիտեի, որ այսպես է լինելու,— վերջապես ասաց ծեր վարպետը։— Ես վաղուց էի նախազգում... Գիտեի, որ դու մի օր ուշանալու ես Արեգակի պաշտամունքի Ծեսից։ Ես դա հասկացա այն ժամանակ, երբ տեսա, թե ինչով են լըցվում քո մտքերն ու հոգին։ Երբ աստղերը մի ան-

գամ գերում են քեզ, դժվար է այլևս նրանց գերությունից ազատվելը:

— Եվ դու այդ մասին չասացի՞ր ինձ,— կիսաձայն բողոքեց պատանին:

— Դու դեռ շատ ջահել ես,— առանց նրա խոսքերին ուշադրություն դարձնելու, շարունակեց ծեր վարպետը:— Իսկ ես հիշում եմ, թե ինչպես համայնքից վտարեցին Գրևք վարպետին: Դրանից շատ տարիներ են անցել... Մեր համայնքի վարպետներից ոչ մեկն այն ժամանակ չկար դեռ...

— Ինչի՞ համար վտարեցին,— անհավոր կանխազգացումով հարցրեց Ռուշուան:— Մի՞թե առավոտյան Ծեսից ուշանալու համար...

— Այն ժամանակ այս վարպետներից ոչ մեկը չկար դեռ,— կրկնեց Արիգին, ապա չոր ծիծաղեց:— Հիմա նրանցից ոչ մեկը չգիտե նույնիսկ, թե ուշացողների համար ինչ պատիժ գոյություն ունի, պատիժ, որ մեր պապերն են ստեղծել: Նրանք հասկանում են միայն, որ դու մեծ մեղք ես գործել: Այդքա՞նը...

Ռուշուան կյանքում առաջին անգամ սարսափով էր նայում ծեր, սիրելի վարպետի դեմքին, ուր անսքող, դաժան վճռականություն էր գծագրվել:

— Եվ նրանք երբեք չեն իմանա,— երկարատև լռությունից հետո, վերջապես նորից Ռուշուային նայելով, ասաց նա:— Ես թույլ չեմ տա քեզ նրանց դատին հանձնել:

— Սիրելի՛ վարպետ...— միայն կարողացավ ասել պատանին:

— Իսկ հետո Արեգակը, իմ մյուս մեղքերի հետ միասին, թող այս մեկի համար նույնպես պատիժ գտնի...

Ռուշուայի աչքերում արցունքներ հայտնվեցին, սակայն նա արագորեն սրբեց դրանք: Արիգին ժպտալով շոյեց նրա երկար վարսերը:

— Դու արդեն երեք գիշեր չէիր քնել,— ասաց նա:— Մյուսներն այդքան չէին կարողանա...

— Բայց դու որտեղի՞ց գիտես,— ապշած բացականչեց տղան:— Մի՞թե...

— Վաղուց արդեն ժամանակն է աշխատանքն սկսելու,— ընդհատեց վարպետը,— պատրա՛ստ եղիր երեկոյան դատին...

Կրակի բոցերը լիզում էին աստղազիծ, սև երկինքը: Բոլոր վարպետները, բացառությամբ Արիգինի, զարդարվել էին տոնական իրենց հանդերձանքներով, դեմքերն ու մարմինները նկարազարդել գույնզգույն ներկերով: Նրանք հանդիսավոր լրջությամբ, այնպես ինչպես ցերեկները Արեգակին էին նայում, հայացքները հառել էին խարույկին: Ըստ հնուց մնացած ավանդույթի, նրանք Արեգակի հզորությամբ ու կամքով պետք է սկսեին Ռուշուա վարպետի դատը, հենց որ կրակը թույլ տալով հասներ մարդու հասակի բարձրության: Ռուշուան նստել էր միայնակ, վարպետների կիսաշրջանի դիմաց, կրակի մյուս կողմում:

Ծեր Արիգին հերթով նայում էր վարպետների դեմքերին, որոնց բոլորին հիշում էր մանկուց: Նա ջանում էր հասկանալ, թե ինչի մասին են մտածում նրանք, ինչ են թաքցնում իրենց այդ մտախոհ լրջության մեջ: Հետո մի թույլ ժպիտ սահեց նրա դեմքով, երբ նայեց Ռուշուային...

Կրակե լեզուները կամաց-կամաց ներքև էին իջնում, փայտե ածխացած բուրգը դանդաղորեն փլվում էր ներքևում կուտակված կրակե շեղջերի վրա:

Արիգին հայացքը նորից սահեցրեց հավաքվածների վրայով:

— Ժամանակն է...— ասաց նա:— Մենք ամենքս Արեգակ-աստծո ծառաներն ենք այս հողի վրա, որտեղից նա մեզ իր աշխարհն է տանում...

— Դու Արեգակ-աստծո որդին ես,— ասաց Կարին զինագործը:— Այս հողի վրա նա քո լեզվով է խոսում մեզ հետ:

— Մեր աշխարհ գալու օրից, Արեգակը տեսնում է մեզ բոլորիս,— առանց զինագործի կողմը նայելու, շարունակեց Արիգին,— և մեր ոչ մի արարքը չի վրիպում նրա աչքից: Նա տեսնում է ամեն բան...

Նա նորից մի պահ լռեց և անխոս նայում էր կրակին: Նա գիտեր, որ իր խոսքն օրենք է մետաղագործ բոլոր վարպետների համար: Գոնե մինչև հիմա ոչ մեկը բացահայտ չէր առարկել նրա վճիռների դեմ: Եվ նա կյանքում առաջին անգամ որոշեց վճիռ կայացնել օրենքի դեմ: Օրենքի դե՞մ հանուն Ռուշուա վարպետի...



— Այսօր Ռուշուա վարպետը չի մասնակցել Արեգակի պաշտամունքի Ծեսին,— դանդաղ շարունակեց նա:— Արև-աստվածն անշուշտ գիտե նաև այդ մասին և սպասում է, թե ինչ վճիռ ենք կայացնելու մենք:

— Դու ավելի լավ գիտես, որ Արևն սպասում է նրա պատժին,— ասաց Կարին զինագործը:— Նա հիմա էլ սպասում է:

— Իսկ ի՞նչ պատիժ կառաջարկեիր դու,— ծաղրանքը չթաքցնելով՝ նրան դարձավ ծեր վարպետը:

— Հողի վրա դու ես Արեգակի կամքի արտահայտիչը,— խուսափեց զինագործը:— Այն ամենը, ինչ ես գիտեմ, քեզանից եմ սովորել:

— Ուրեմն լսե՛ք, թե ինչ եմ ասում ես՝ Արեգակ-աստծո որդիս,— տեղից վեր կենալով հատ-հատ արտասանեց Արիգին:— Արևի կամքով ու զորությամբ մենք ոչ մի պատիժ չենք տա Ռուշուա վարպետին...

— Հա՛-հա՛-հա՛...— հանկարծ լսվեց մթից: Հետո մի կորացած ծերուկ մոտեցավ կրակի մոտ կիսաշրջան նստած վարպետներին:— Արիգի՛, դու խախտում ես արևի օրենքները: Ծեսից ուշանալու համար անպատիժ չեն թողնում...

— Հեռացի՛ր,— սառը ձայնով հրամայեց Արիգին:— Հեռացի՛ր և մի՛ խառնվիր վարպետների խորհրդին:

— Ո՛չ,— վախեցած ետ քաշվեց ծերունին:— Սրանցից ոչ մեկը չի լսել Գրեք վարպետի մասին: Սրանք բոլորն էլ շատ ջահել են...

— Գրեք վարպետն ո՞վ է,— հարցրեց Կարին զինագործը:

— Նա նորից զառանցում է,— ասաց Արիգին:

— Հա՛-հա՛-հա՛...— սուր բրբջաց ծերունին:— Դժբախտություն կպատահի, արևը կխռովի մեզանից: Համայնքը կկործանվի: Գրեք վարպետից հետո էլ համարյա ամբողջ համայնքը կործանվեց: Դրա համար էլ հիմա նրան չեն հիշում: Հա՛-հա՛...

— Հեռացրե՛ք այդ դժբախտ խելագարին այստեղից,— բարկացած գոռաց Արիգին:

Երկու երիտասարդ վարպետներ մոտեցան նրան ու ձեռքերից բռնելով տարան դեպի խավարը: Դեռ հեռվից լսվում էր նրա խենթ ծիծաղը:

Ռուշուան ձեռքը մոտեցրեց ճակատին և զգաց, որ այն թաց է: Նա ափով սրբեց քրտինքի սառը կաթիլները:

— Ինչի՞ մասին էր խոսում նա,— հարցրեց Ամագու վարպետը՝ Արիգիին դառնալով:— Ինչո՞ւ դու թույլ չտվեցիր, որ նա շարունակեր:

— Նա խելագար է,— քմծիծաղեց Արիգին,— իսկ խելագարները կարող են խոսել ինչի մասին ասես: Եթե ուզում ես, վաղը կարող ես գնալ նստել



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

նրա կողքին ու սրտիդ ուզածի չափ զառանցանքներ լսել: Իսկ հիմա անհրաժեշտ է վճռել:

— Դու ասում ես, որ պետք է անպատիժ թողնել Ռուշուա վարպետին,— ասաց Կարին վարպետը:— Քո բերանով մեզ հետ ինքը Արև-աստվածն է խոսում: Ուրեմն հարկավոր է հենց այդպես վարվել...

Մյուսները նույնպես իրենց համաձայնությունն արտահայտեցին և կամաց-կամաց սկսեցին ցրվել: Կրակն արդեն մոխրով էր ծածկվում, և նրա լույսն աղոտանում էր:

Քիչ անց կրակի մոտ մնացին միայն Ռուշուան ու Արիգին: Ծեր վարպետը փայտի կտորով կրակի շեղջերն իրար էր խառնում, իսկ պատանին նայում էր կրակից կարմրաւն թվացող նրա դեմքին:

— Բոլորը գնացի՞ն,— առանց հայացքը կրակից կտրելու, հարցրեց Արիգին:

— Բոլորը,— Ռուշուան մոտեցավ, նստեց նրա կողքին:— Ինչո՞ւ էր այդ խելագարն ուզում, որ ինձ անպայման վտարեն համայնքից:

— Այդ խելագարը Գրեք վարպետն է,— պատանու աչքերի մեջ նայելով ցածրաձայն ու հանգիստ ասաց ծեր վարպետը:— Սակայն հիմա նա ինքն էլ չգիտե այդ մասին: Գրեք վարպետի մասին ոչ ոք ոչինչ չգիտե: Բացի ինձանից...

Ռուշուան այդ օրվա ընթացքում արդեն երկրորդ անգամ սոսկումով նայեց իր սիրելի ծեր վարպետին: Նաև կյանքում երկրորդ անգամ...

— Գնա՛,— հանկարծ ժպտալով ասաց Արիգին:— Դո՛ւ նույնպես գնա, որպեսզի վաղը կարողանաս մասնակցել Ծեսին...

# ԻՆՉ ԱՍԵԼ Է ՊԱՐՏՔԻ ԶԳԱՑՈՒՄ

*Արդյո՞ք բավական է, որ դպրոցականը ուսման մեջ ցուցաբերի առաջադիմություն և կարգապահ լինի։*

*Այս հարցի շուրջ մեր ամսագրի դպրոցական բաժնի վարիչ ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆԸ զրույց ունեցավ Երևանի № 96 դպրոցի մի խումբ 10-րդ դասարանցիների հետ։ Տպագրելով վերոհիշյալի մասին նրանց արտահայտած մտքերն ու կարծիքները, մեր ընթերցողներին հրավիրում ենք մասնակցել սկսված խոսակցությանը, գրել մեզ, թե ինչպիսի այլ վիճակների եք ականատես եղել դուք և ով ինչպես է դրսևորել իրեն։*

ԻՐԱ ՊԱՊՅԱՆ.— Անցյալ տարի մի խումբ աշակերտներով մենք Մոսկվա մեկնեցինք։ Մեկնումը շատ վատ էր պահում իրեն. անցորդներին հրմշտում էր, խցկվում հերթերի մեջ, աղջիկների մազերից քաշում կամ ծաղրում։ Տղաներից մեկը դիտողություն արեց նրան, փորձեց կարգի հրավիրել։ Իսկ նա ամաչելու կամ լուրջ հետևություն անելու փոխարեն, փքվեց ու ատամների միջից արհամարհանքով նետեց. «Արա՛, այնպես ես խոսում, ոնց որ երևանցի չլինես»։ Ես ամոթից ու վիրավորանքից չգիտեի ինչ անել։ Ցավալի է, որ մարդիկ կան, որոնց, չգիտես ինչու, թվում է, թե երևանցի կամ Երևանի որևէ թաղամասից լինելը պետք է նրևա անվայել արարքից, կոպտությամբ ու խուլիգանությամբ։

ՀՐԱՉԻԿ ՍԱՐԳՍՅԱՆ.—Մի անգամ ավտոբուսում մի տղա վիճում էր տարեց մարդու հետ, կոպիտ խոսքեր ասում։ Մոտեցա և տղային զգուշացրի, որ վիրավորական խոսքեր չասի իրենից մեծին, չհոխորտա և տրանսպորտում իրեն կանոնավոր պահի։ Անծանոթը նախ վերից-վար չափեց ինձ, անըսպասելի էր երևի միջամտությունս։ Հետո սկսեց նույն՝ ամբարտավան տոնով ինձ հետ խոսել։ Սակայն ուղևորներից մի քանիսն էլ միջամտեցին և ճանապարհին նրան իջեցրինք։ Բոլորն էլ մի տեսակ խաղաղվեցին, ուղևորների դեմքի լարվածությունն անցավ։ Եթե բոլորս հասարակական վայրերում, տանը, դպրոցում ճիշտ կատարենք մեր պարտքը, ապա նման արարքների թիվը կկրճատվի և ավելի հաճելի մթնոլորտ կտիրի ամենուր։

ՌՈՒԶԱՆՆԱ ԶԱՆԱԶՅԱՆ.— Մեր դասարանցի Ս.-ն ծանր վիրահատություն տարավ։ Այնուհետև երկար ժամանակ պառկած էր հիվանդանոցում։ Մենք այդ ամիսների ընթացքում միշտ այցելում էինք նրան, մեր անցած դասերը հաղորդում, օգնում սովորել և այնպես արինք, որ նա ոչ մի դասից անտեղյակ չմնաց և փոխադրվեց։

ՀԱԿՈԲ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Մեր դասարանցիները միմյանց նկատմամբ հոգատար են և ուշադիր։ Ինչպես հաճախ պատահում է իմ տարիքի տղաների հետ, եղավ ժամանակ, որ ես էլ սկսեցի դասերից բացակայել, քիչ պարապել տանը և հրապուրվել վատ ընկերությամբ։ Հետո, որպես դրա անխուսափելի վկայություն, գըրպանումս ծխախոտ հայտնվեց։ Դա չվրիպեց իմ դասընկերների աչքից, և նրանք շատ զգույշ, առանց բարձրագոչ խոսքերի ու ելույթների, պաշտպանական գոտի ստեղծեցին իմ շուրջը՝ ճանճախակի մասնակից դարձնելով ինձ դասարանական, ընդհանուր միջոցառումներին, ցերեկույթներին, կինոդիտումներին, համատեղ դասեր պատրաստելուն և հավանական դարձրին, թե որքա՜ն հաճելի ու գեղեցիկ է շիտակ ու առանց կասկածանքի նայել մարդկանց, չամաչել իր արարքից, ժամանակը տրամադրել գիտելիքներ ձեռք բերելուն։ Եթե նրանք ինձ չօգնեին, հեռու չպահեին անցանկալի ազդեցությունից, երևի ինձ ցավալի հեռուները տանեին այդ հրապուրանքը։

ԷԴՎԱՐԴ ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ.— Այս ամռանը ես աշխատում էի շինարարության վրա։ Աշխատանքային առաջին իսկ օրից շինարարները այնքան մտերմաբար վերաբերվեցին ինձ, որ թվաց, թե վաղուց ի վեր աշխատում եմ նրանց հետ։ Այդ երկու-երեք ամիսների ընթացքում ես ոչ միայն ծանոթացա քարտաշի, հյուսնի, կռունկավարի ու մյուսների աշխատանքին, այլև սովորեցի մարդկանց միշտ օգնող ու կարեկից լինել։ Եվ որոշեցի դպրոցն ավարտելուց հետո շինարար դառնալ։

ՀԱՍՄԻԿ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.— Ամռանը ես հանգստանում էի Սևանի շրջանի Ցայչի գյուղում։ Իմ հասակակից ուրիշ հյուրեր էլ կային։ Ամռան ամիսները շատ լարված են անցնում գյուղում։ Տնտեսությունը աշխատող ձեռքի մեծ կարիք է ունենում։ Առաջին օրերից ես դա նկատեցի և դպրոցական արտադրական բրիգադի անդամների հետ գնացի խոտ հավաքելու։ Ճիշտ է, սկզբում չէի կարողանում նրանց նման աշխատել, սակայն հետզհետե սովորեցի։ Փորձեցի հովեկ մյուս երեխաներին էլ տանել ինձ

հետ, բայց լուրջ դիմադրության հանդիպեցի: Նրանք պատճառաբանում էին, թե իրենք հանգստանալու են եկել, իսկ որ տնտեսության խոտը չորանում, արևի տակ որակազրկվում էր, բոստանային կուլտուրաները էին փչանում, հացահատիկն էր կալերում կոտակվում, նրանց քիչ էր հետաքրքրում: Նրանք մոռանում էին, որ այդ բարիքներից մեծ հաճույքով օգտվում էին և իրենք:

ՍՎԵՏԼԱՆԱ ԳԱԼՍՏՅԱՆ.— Ծովափնյա շատ քաղաքներում եղա այս ամռանը:

Ծովափում վրաների տակ էինք ապրում և բոլորս էլ՝ հայեր: Շատ տնտեսուհիներ ուտեփքների մնացորդները ուղղակի ծովն էին նետում: Երբ քաշվելով զգուշացնում էի, որ այդպես չի կարելի անել, աղտոտում եք ծովը, նրանք չլսելու էին տալիս կամ լուրջ-լուրջ արդարացնում իրենց արարքը, ասելով. «Ծովին ի՞նչ պետք է լինի, ծովը մեծ է»:

ԳԱՅԱՆԵ ԾԱՀՐԱԶՅԱՆ.— Ամռանը ես էլ էի աշխատում ֆարտադրական բրիգադի հետ: Աշակերտական երկու բրիգադով մրցում էինք ոչ միայն շատ խոտ հավաքելու, այլև հանգիստը հետաքրքիր անցկացնելու համար: Մի օր էլ մեր ու մյուս բրիգադի երկու տղաներ վիճեցին և վեճը այնտեղ հասավ, որ նրանք առանձնացան, ինչպես ընդունված է ասել, գնացին «հաշիվ մաքրելու»: Սկզբում շվարած նայում էինք հեռացող տղաներին, իսկ երբ նրանք տեսադաշտից դուրս եկան, նոր միայն սթափվեցինք, կարծես ավելի պարզ դարձավ, թե ուր կարող է հասցնել անմեղ խոսակցությունը, ու մի քանիսով վազեցինք նրանց ետևից: Եվ ճիշտ ժամանակին հասանք, բաժանեցինք իրարից: Զնայած նրանցից մեկը՝ Սուրիկը հոխորտում էր, դժգոհում, որ միջամտել, խանգարել էինք իրեն, բայց մենք ուրախ էինք, որ ճիշտ ու ժամանակին էինք կողմնորոշվել, կանխել ծանր հետևանքներով լի մի միջադեպ:



# ԳԻՇԵՐԱՅԻՆ ԱՌԱՍՊԵԼ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

Աստղերը կայծկլտուն քարեր են
Ջրերի խորքերում շաղ տված,
Գետի հետ հոսում է լուսինը՝
Շողշողուն քարերով հմայված:

Քամին իր անմարմին նավակով
Գնում է ինչ-որ բան փնտրելու,
Գնչուի նման նա ոչ մի տեղ
Փնտրածն իր երբեք չի գտնելու:

Գետափին ջրահարսն է լալիս.
— Զգեստներս ո՞ւր են, չեն երևում,
Լուսինը սպիտակ ծոպերով
Մի շապիկ է նրան նվիրում:

Մի մանուկ ձեռքին մի ջահ բռնած՝
Իջնում է բլուրի գագաթից,
Աստղերը սպիտակ բույլերով
Պապղում են նրա ճակատին:

Արևը կարմիր մի աղավնի,
Շողեր է երկնքի մեջ հյուսում,
Միածանի բոլոր գույներն են
Դաշտերի վրա կաթկթում:

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

# ԿՈՇԿԱԿԱՐԸ

ՎԱՀԱՆ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ

«Ճը՛ռռ... ճը՛ռռ...»— քայլում էր կոշկակար Երվանդն արհեստանոցում:

«Ճը՛ռռ... ճը՛ռռ...»—ճռճռում էին կոշկակար Երվանդի կոշիկները:

Ամեն անգամ նոր կոշիկ կարելիս կոշկակար Երվանդը ջանք չէր խնայում, որ դրանք լինեն աշխարհի ամենալավ, ամենագեղեցիկ, ամենաամուր ու ամենահարմար կոշիկները:

Նա կարում էր տղամարդու կոշիկներ, կանացի կոշիկներ, երեխաների կիսակոշիկներ, պայիկների չստեր, տատիկների մաշիկներ:

Ճռճռում, քստքստում, ադմկում կամ պահարանի դարակին հանգըստանում էին կոշկակար Երվանդի կարած ու քաղաքով մեկ տարածված հռաշալի կոշիկները:

«Ճը՛ռռ... ճը՛ռռ...»—ճռճռում էին կոշկակար Երվանդի ոտքերին սեփական կոշիկները:

— Լսի՛ր, ձա՛խ կոշիկ,—քայլելիս դիմում էր ընկերոջը կոշկակար Երվանդի աջ կոշիկը,— մենք ծեր ենք, հոգնած ու հին...

— Այո՛, ա՛ջ կոշիկ,— պատասխանում էր ձախը,— մենք հին ենք ու պատառոտված, մեկ վաղուց հանգստանալ է պետք:

Այդ ժամանակ խոսում էին կոշկակար Երվանդի սեփական ոտքերը:

— Մենք շատ ենք բողոքել դրա դեմ ու պահանջել, որ նա մեկ համար նոր կոշիկ կարի, բայց միշտ ասում է, թե ժամանակ չունի:

«Ճը՛ռռ... ճը՛ռռ...»— ետուառաջ էին անում կոշկակար Երվանդի ոտքերին իր հին կոշիկները, երազելով հանգստի մասին: Ետուառաջ էին քայլում կոշկակար Երվանդի ոտքերը, երազելով նոր կոշիկներ:



# ԳՅՈՒՂԸ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ



1

Աշուն ու ամառ, ձմեռ ու գարուն
Աստղերը գալիս փարվում են գյուղին,
Գյուղն հավատում է իր պայծառ աստղին
Ամառ ու աշուն, ձմեռ ու գարուն:

Եվ մանուկներ են ծնվում տներում
Աստղե թևերով, աստղեր աչքերում:

Գարուն ու ձմեռ, ամառ ու աշուն
Քամի է գալիս ծեր գյուղի համար,
Գյուղն սպասում է իր ընկեր քամուն,
Գարուն ու ձմեռ, աշուն ու ամառ:

Եվ մանուկներ են թռչում դաշտերով
Ծիլպոտներ հեծած, քամու թևերով:

Աշուն ու ձմեռ, ամառ ու գարուն
Արևն այրվում է իր գյուղի համար,
Գյուղն հավատում է արևին անմար,
Գարուն ու ամառ, ձմեռ ու աշուն:

Եվ տղաները բանակ են գնում
Գյուղի լուսինը իրենց աչքերում:
Մշուշն է գալիս փաթաթվում գյուղին,
Ու սփոփում է իր փոքրիկ գյուղին
Բոլոր օրերին, բոլոր օրերին:

2

Քո որդիներն ենք, անձրևն է ասում,
Գյուղ, քո զավակն ենք, հարազատն ենք քո,
Քո դաշտերի մեջ այնպես կծծվենք,
Որ հասկերդ ճռճվեն արևի ներքո:

Որ երբ տղաներդ տուն դառնան հերթով,
Ընդունես հացի լիքը տաշտերով:

Նկ. ԱՆԱՀԻՏ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

## ՈՒՄ ԵՄ ՈՒԶՈՒՄ ՆՄԱՆՎԵԼ

Այնպիսի մարդու իդեալ, որին կուզեի նմանվել, իմ մեջ տպավորվել է գրքերից։ Բայց գրքերում այնքան դրական հերոսներ կան, որոնց բոլոր դրական գծերը անկարելի է մի մարդու մեջ ամփոփել։ Յուրաքանչյուր պատանու հիացմունք է պատճառում հրացանակիրների ազնվությունը, կոմս Մոնտե Քրիստոյի հպարտությունը, Ժյուլ Վեռնի հերոսների խիզախությունը։ Մի՞թե կա մեկը՝ մեծ թե փոքր, որին չի հիացրել Ժան Քրիստոֆի մեծ հումանիզմը, և կգտնվի՞ արդյոք մի մարդ, որ չուզենա նմանվել Միքայել Նալբանդյանին՝ այդ բազմակողմանի զարգացած, մեծ տաղանդի տեր, ազատության մարտիկին, ըմբոստ հոգու տեր, մեծ հայրենասերին։

Ինձ վրա մոգական ազդեցություն է թողել մեծ գիտնական Հրաչյա Աճառյանի զարմանալի կյանքի պատմությունը։ Դա իսկական օրինակ է։ Երբեմն մեզ թվում է, թե մեծ մարդկանց կյանքը շատ հարթ և հաճելի է անցել, բայց երբ լսում ես նրանց կյանքի պատմությունը, կրած դժվարությունները, դրանց հաղթահարելու համար նրանց ցուցաբերած կամքի ուժը, ավելի ես պաշտում նրանց, նրանք դառնում են քո խորհրդատուները, նրանց նմանվելու ցանկությունն ավելի է մեծանում քո մեջ։

Բարձր օրինակ է ինձ համար Երվանդ Քոչարի արվեստը. նրա կերտած Սասունցի Դավիթը և Վարդան Մամիկոնյանը մեր ժողովրդի հերոսական, անընկճելի կամքի հզոր արտահայտություններն են։ Ես օրինակ եմ վերցնում իր գործը լավ իմացող բանվորից, ինձ հմայող մեծ արվեստագետներից։ Ինչպե՞ս կարելի է օրինակ չվերցնել աշխարհահռչակ Վիկտոր Համբարձումյանից։ Իմ պատանեկան հոգին շատ է հմայում մեծ գիտնականի անսահման համեստությունը։ Մի քանի օր առաջ նա հեռուստատեսությամբ կրկին ելույթ ունեցավ և նորից գերեց ինձ։ Այո՛, ես կաշխատեմ նմանվել այդ մարդկանց։

*ԵՐՎԱՆԴ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

*Հով. Թումանյանի անվ. դպ. 8-րդ դաս. աշ.*




*ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Մարդկային անձնազոհությունն ու քաջությունը սահմաններ չեն ճանաչում։ Պատմությունը լի է դեպքերով, երբ մարդիկ նախընտրել են արիաբար զոհվել, քան գլուխ խոնարհել թշնամու առաջ։

Մ. թ. ա. 36—35 թթ. արևելք կատարած իր արշավանքը անհաջողությամբ ավարտած Անտոնիոսը, իր հեղինակությունը վերականգնելու նպատակով, Հայաստանում դավադրությամբ գերեվարեց հայոց Արտավազդ II արքային և Ալեքսանդրիա տարավ։ Հույն պատմիչ Դիոն Կասսիոսը գրում է, որ նրան շատ էին խնդրում, հորդորում, ազատության խոստում տալիս, միայն թե Հայաստանի գրավման առթիվ կազմակերպված զորահանդեսին նա ընկներ Կլեոպատրայի ոտքերը՝ փըրկություն աղերսեր։ Սակայն հայոց թագավորը մահը գերադասեց ստորացումից, որովհետև գիտեր, որ ինքը տվյալ պահին ներկայացնում է ամբողջ Հայաստանը, որը թեև նվաճվել էր, բայց չէր հաշտվել հըպատակության հետ, շարունակում էր պայքարը անկախության համար։ Եվ իսկապես, ստանալով իր արքայի քաջության և մահվան լուրը, հայ ժողովուրդը նոր թափով պայ-

քարի նետվեց և դուրս քշեց թշնամուն:

1054 թ. անհամար զորքով, փղերով և երիվարներով, Տուղրիլ սուլթանի գլխավորությամբ Հայաստան ներխուժեցին թուրք-սելջուկները: Բյուզանդիայի կողմից բաժան-բաժան եղած Հայաստանը անկարող էր կանգնեցնել զորեղ թշնամուն: Թշնամին թալանելով, ավերելով և հրկիզելով առաջ էր շարժվում: Եվ կրկին ելան քաջերը, իրենց անձնազոհությամբ կոտրելու ոսոխի հանդգնությունը: Այդ քաջերից մեկն էր Թաթուլ Վանանդեցին, որը անհավասար մարտերից մեկում գերի ընկավ թուրք-սելջուկներին: Հայ պատմիչ Արիստակես Լաստիվերցին պատմում է, որ Թաթուլը վիրավորել էր սուլթանի սիրելիներից մեկին: Եվ ահա Տուղրիլը իր մոտ կանչելով Թաթուլին, ասաց. «Եթե նա ապրի, քեզ կազատեմ, բայց եթե մեռնի, կհրամայեմ քեզ նրան մատաղ անեն»: Սուլթանը, որը աղերսանք էր սպասում Թաթուլից, հանկարծակիի եկավ, երբ անվեհեր քաջը պատասխանեց. «Եթե իմ զարկածըն է, չի ապրի»: Թաթուլը ըսպանվեց, բայց լսելով նրա պատասխանը, այդ պահին սուլթանը չէր կարող ահ չզգալ, չհասկանալ, որ նման քաջեր ունեցող ժողովուրդը վաղ թե ուշ վրեժ կլուծի իր թշնամուց:

19-րդ դարի սկզբներին Եվրոպայում փլվում էին գահեր, խորտակվում դեռևս երեկ «սրբազան» համարվող թրոնքներ, ծաղրի էր ենթարկվում գոռոզ արիստոկրատիան: Ֆեոդալական հասարակարգը փոխարինվում էր նոր՝ կապիտալիստական հասարակարգով: Բայց ահա թվում էր, որ Ռուսաստանը մոգական գավազանի հրաշք հարվածով զերծ է մնացել դարի այդ «սոսկալի հիվանդությունից»: Ազնվականները շարունակում էին մնալ միակ արտոնյալ դասը, ազնիվ և բարեհոգի ժպիտը դեմքին, պարահանդեսներում փայլում էր Ալեքսանդր I ցարը, ճիշտ և ճիշտ, ինչպես մի նոր Լյուդովիկոս XIV, որը հրաշքով միջնադարից ընկել էր Ռուսաստան: Բայց ահա պայթեց դեկաբրիստների ապստամբությունը: 1825 թ. դեկտեմբերի 14-ին, Սենատի հրապարակը գնացող դեկաբրիստներից շատերը գիտեին, որ այլևս ետ չեն վերադառնալու: Հաջողության հույսը շատ փոքր էր: Սակայն նրանք գիտակցորեն նահատակության էին գնում, որովհետև գիտեին, որ իրենց կորուստը անհրաժեշտ է «քնած Ռուսաստանին» արթնացնելու համար: Կ. Ֆ. Ռիլեևը դեկտեմբերյան ելույթից առաջ գրել էր.

**Անկում է սպասվում, ես գիտեմ,**<br>
**Նրան, ով առաջինն ապստամբի**<br>
**Ժողովրդի ճնշողների դեմ.**<br>
**Ճակատագիրը դատապարտել**<br>
**է ինձ արդեն:**<br>
**Բայց թե որտե՞ղ, ե՞րբ է եղել**<br>
**Ազատությունն առանց զոհի:**

Դեկաբրիստ Ն. Ա. Բեստուժևն իր «Հիշողություններ Կ. Ֆ. Ռիլեևի մասին» գրքում պատմում է, որ երբ դեկտեմբերի 14-ին նա պատրաստվում էր տանից դուրս գալ, կինը ըսկըսեց աղերսել, որ նա մնա տանը: Հանդիպելով ամուսնու անդրդվելիությանը, կինը ձայն

*Թևավոր խոսքեր*

## ՓՈՐՁԱՔԱՐ

Քաղաքաբնակների համար հեշտ չէ հասկանալ այս բառը, գյուղացիներն ավելի շուտ գլխի կընկնեն: Մթության մեջ (և նույնիսկ օրը ցերեկով) խուլ ճամփաներով ու արահետներով քայլելիս, մարդու ոտքը շատ հաճախ դիպչում է գետնից դուրս ցցված քարերի: Նման դեպքերում կարող ես սայթաքել և, նույնիսկ, ոտքդ կոտրել:

Նույն վիճակում էին մարդիկ նաև հին Հրեաստանում քարքարոտ ճանապարհներով քայլելիս: Զարմանալի չէ, որ «Աստվածաշնչի» տեքստերից մեկում մեղապարտների համար փորձաքար է համարվում աստված ինքը և իր օրենքները:

Առավել զարմանալին այն է, որ մենք հիմա էլ այդպես ենք կոչում ամեն մի խոչընդոտ, հատկապես այն, ինչը շարունակաբար արգելակում, խանգարում է մեզ:

## ԿԱՐԹԱԳԵՆԸ ՊԵՏՔ Է ԿՈՐԾԱՆՎԻ

Կարթագենի և Հռոմի միջև կյանքի և մահու պայքարի՝ Փյունիկյան պատերազմի ժամանակ, Հռոմի խստաբարո սենատոր Կատոն Ավագը հռչակվել էր մի հատուկ սովորությամբ. ինչի մասին էլ որ խոսեր սենատի ժողովներում՝ հանձնաժողովների ընտրությունների թե Հռոմի շուկայում վաճառվող բանջարեղենի գների մասին, նա իր յուրաքանչյուր խոսքը մշտապես ավարտում էր նույն արտահայտությամբ. «Եվ բացի այդ, ես կարծում եմ, որ Կարթագենը պետք է կործանվի»: Ծեր քաղաքագետը քանիցս եղել էր Աֆրիկայի ափին՝ Հաննիբալի որջում՝ նույն այդ Կարթագենում և ամեն անգամ վերադարձել այնպես ցնցված նրա հզորությամբ ու հարստությամբ, որ այդ պետության գոյությունն իսկ համարում էր (և ոչ անհիմն) մահացու վտանգ իր հայրենիքի համար:

է տվել աղջկան. «Նա՛ստենկա, խնդրի՛ր հորդ քո և իմ կողմից»: Վախեցած երեխան մոտ է վազում հորը և հեկեկալով գրկում նրա ծնկները, մինչ այդ մայրը համարյա ուշագնաց ընկնում է նրա կրծքին: Ռիլեևը կնոջը դնում է բազմոցին և ազատվելով աղջկա գրկից, հրապարակ է գնում»:

Պետրոպավլովյան ամրոցում բանտարկված դեկաբրիստներին ինչ տանջանքների ասես, որ չէին ենթարկում, ստիպում, որ դատարանում նրանք հանդես գան զղջման խոսքով, ժողովրդին ասեն, որ սխալվել են: Սակայն ոչինչ չընկճեց դեկաբրիստների արիությունը: Իսկ Ռիլեևը իր խցում անագե ափսեի վրա մեխով գրեց իր վերջին քառյակը.

**Բանտը պատիվ է ինձ և ո՛չ անարգանք,**
**Արդար գործի դատն է բերել ինձ այստեղ,**
**Ամո՞թ համարեմ շղթա ու կապանք՝**
**Երբ կրում եմ այն, հայրենիք, քեզ համար:**

Նիկոլայ I-ը դաժանորեն հաշվեհարդար տեսավ դեկաբրիստների հետ, բայց նրանց հերոսությունը անհետք չկորավ: «Այդ մարդիկ ցանկանում էին հայտարարել համայն ժողովրդին ազատության միտքը,— գրել է Ա. Գերցենը,— գիտենալով, որ իրենք կկորչեն, բայց համայն ժողովրդին հայտարարված միտքն արդեն երբեք չի կորչի»:

Իսկ քաջության ինչպիսի՜ անկրկնելի օրինակներ են տրվել ռուս հեղափոխականները ցարիզմի դեմ մղված պայքարում, շարունակելով դեկաբրիստների սկսած գործը: Քանի՜-քանի հեղափոխականներ են դատարանի դահլիճում մերկացնող ելույթներ ուղղել ցարական կառավարությանը, հաստատ իմանալով, որ դրա դիմաց իրենց կախաղան է սպասվում կամ տաժանակրություն: Այս առիթով, պատմաբան Լեոն իր հուշերում մի հետաքրքիր դեպք է հիշատակում մի անհայտ ռուս հեղափոխական աղջկա մասին, որը նրան պատմել է ռուս փաստաբան Սոկոլովը: Վերջինս, որը եղել է այդ աղջկա դատապաշտպանը, նրան խնդրել է, աղաչել, որ դատի ժամանակ, երբ հարցնեն, թե նա արդյոք եղե՞լ է այսինչ ժողովում, պատասխանի՝ ոչ: Միայն այդ դեպքում աղջիկը կփրկվեր կախաղանից: Սակայն աղջիկը ոչ մի կերպ չի համաձայնվել, դա համարելով թուլամորթություն: Վերջապես, ճարահատյալ դատապաշտպանը դիմել է վերջին միջոցին. խնդրել, որ աղջիկը գոնե հրաժարվի այդ հարցին պատասխանելուց, մի բան, որի իրավունքը ունի մեղադրվողը: Բայց դրան անգամ, աղջիկը չի համաձայնվում:

Մի՞թե ավելորդ էր նրանց անձնազոհությունն ու քաջությունը: Մի՞թե դատարանում արտասանած նրանց համարձակ ելույթները դուրս չէին գալիս դահլիճի պատերից, արձագանքում ամբողջ Ռուսաստանում, ցնցում ցարիզմի հիմքերը:

Ո՛չ, ավելորդ չէր նրանց անձնազոհությունը: Մարդկությունը ազատության և քաղաքակրթության ճանապարհին շատ նահատակներ է տվել, և նրանց հիշատակները երբեք չեն խամրել ապրողների հոգիներում: Պատմության մութ ու դժվարին շրջադարձերում, որպես անմար ջահեր, նրանք լուսավորել և լուսավորում են ճանապարհը, մարդկանց ցույց տալիս ճշմարիտ ուղին:

---

Իմաստուն ծերունու վրա սկզբում ծիծաղում էին, իսկ հետո ամեն ինչ եղավ այնպես, ինչպես ինքն էր կամենում՝ արյունահեղ տասնյալի պատերազմում Հռոմը հաղթեց Կարթագենին և ջնջեց երկրի երեսից, հռոմեական գութանով վարելով այն տեղը, ուր կանգնած էր նա:

Անցել է երկու հազարամյակ, բայց մենք դեռևս հիշում ու կրկնում ենք համառ ծերունու խոսքը. կրկնում ենք երկու դեպքում՝ երբ ուզում ենք ասել, թե ինչ-որ մեկը տառապում է սևեռուն մի գաղափարով, մոլագարությամբ, որից նրա միտքը շեղել հնարավոր չէ, և մեկ էլ, երբ հարկավոր է ցույց տալ իրական, հարատև և ահավոր վտանգ, որը չվերացնելու դեպքում նորմալ կյանքը անհնարին կլիներ:

«Ցետերում ցենսեո,— ասում ենք այդ դեպքում Կատոնի նման:— Կարթագինեմ դելենդամ էսսե»:





## ՔԱՐԸ ՔԱՐԻՆ ՉԹՈՂՆԵԼ

Սա նշանակում է քանդել, հիմնահատակ անել: Այս արտահայտությունը Քրիստոսի մասին եղած մի ավանդությունից է մնացել: Ըստ «Ավետարանի», Քրիստոսը մի անգամ Երուսաղեմի կործանումն է գուշակում, ձեռքով ցույց տալով նրա շքեղ շինությունները, ասում է. «Տեսնո՞ւմ ես այս հսկա շենքերը: Այս ամենը պետք է կործանվի այնպես, որ քարը քարին չմնա»:

Մ. Ե. Սալտիկով-Շչեդրինը «Կյանքի մանրուքներ» գրքում, իրեն հատուկ կծու ծաղրով, գրում է. «Ոչ մի ցախավել այնպես չէր ավլի, ինչպես վերստուգող սենատորը: Քարը քարին չթողեց, նահանգապետից մինչև ցածրաստիճան գրագիրը՝ մասսայաբար վտարվեցին ու դատի տրվեցին»:

## ԿԱՍՏՈՐ ԵՎ ՊՈԼՈՒՔՍ

Այս անուններն ունեին հին հունական առասպելական երկվորյակները՝ Զևս աստծու և մահկանացու Լեդայի զավակները: Պոլուքսն անմահ էր, ինչպես հայրը: Կաստորը՝ մահկանացու էր մոր նման: Բայց երկվորյակներն այնպիսի քնքուշ սիրով էին կապված միմյանց, որ ռազմի դաշտում զոհված Կաստորի մահից հետո Պոլուքսը վճռում է իր անմահությունը կիսել նրա հետ: Աստվածների հայրը թույլ է տալիս այդ՝ մի պայմանով միայն, որ հետագայում եղբայրները մի օր ապրեն կենդանի մարդկանց մեջ, մյուս օրը՝ մեռյալների մռայլ թագավորության մեջ:

Հավանական է, որ Կաստոր և Պոլուքս, կամ ինչպես այլ կերպ կոչում են Դիոսկուր եղբայրներ, անունը դարձել է հավատարմության, երկու անբաժան ընկերների հասարակ անուն:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ




## ԶԵՆՈՆԻ ԽՐԱՏԸ

Զենոնը մի շատախոս աշակերտի այսպես ասաց. «Մենք ունենք երկու ականջ և ընդամենը մեկ բերան, որպեսզի ավելի շատ լսենք և որքան հնարավոր է քիչ խոսենք»:

## ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ

Մի անգամ հայտնի լեհ ջութակահար Հենրիկ Վենյավսկին հրավիրված էր թեյի:

— Ձեր ջութա՞կն էլ հետներդ վերցրեք:

— Ջութակիս կողմից շատ շնորհակալ եմ,— քաղաքավարությամբ պատասխանեց Վենյավսկին,— ցավոք, նա թեյ չի խմում:





* * *

«Եթե դուք ունեք մի խնձոր, ես էլ ունեմ մի խնձոր, և մենք փոխանակում ենք մեր խնձորները, ապա ձեզ մոտ և ինձ մոտ դարձյալ կմնա մեկական խնձոր: Իսկ եթե դուք ունեք մեկ միտք, ես էլ ունեմ մեկ միտք և մենք փոխանակում ենք մեր մտքերը, ապա մեր՝ յուրաքանչյուրիս մոտ կլինի երկուական միտք»:



# ՆԱ ՄԵ՞Ծ Է ԱՐԴԵ՞Ն

ՏԱԹԵՎԻԿ ԳՈՂՈՍՅԱՆ

Մեծերը արև նկարել չգիտեն: Դեղին ներկը լցնում են շրջանակի մեջ և վերջ: Դա արև չէ: Աշխարհի բոլոր երեխաները գիտեն, որ արևի շրջանակի մեջ պետք է երկու կլոր աչք նկարել, քիթ և երկար կոր գծով ժպտացող բերան: Որովհետև արևը միշտ ժպտում է, իսկ եթե ժպտում է, կնշանակի դեմք ունի: Այս հարցում մեծերը պետք է վստահեն փոքրերին, որովհետև փոքրերը անսխալ գիտեն ինչպես նկարել ժպիտը, բարին, լույսը: Իսկ Արա Հայթայանը, երբ դեռ շատ փոքր էր, նախ և առաջ արև էր նկարում սպիտակ թղթի աջ անկյունում և հետո միայն որոշում, թե արևի տակ ինչ ապրեցնի:

Հիմա Արան 11 տարեկան է: Վերջերս Երևանի մանկական պատկերասրահում բացվեց նրա նկարների ցուցահանդեսը: Պարզ է, որ միայն արև նկարելով նկարիչ չես դառնա և ցուցահանդես էլ չես բացի: Արայի առաջին բնորդները, իհարկե, նրա հայրն ու մայրն էին և հետո այն ամենը, ինչ նա տեսնում էր՝ մեքենա, զինվորներ, ծառեր... Աշխարհում նկարելու շատ բան կա, բայց ամեն ինչ նկարելով՝ նույնպես նկարիչ չես դառնա: Արան ունի բազմազան առարկաների ներդաշնակ զգացում ու այդպես թղթի վրա պատկերելու կարողություն: Ինչպես սիրում են ասել մեծահասակ նկարիչները՝ նրա նկարներում «օդ կա»: Դա էլ շատ կարևոր է, բայց դա էլ բավական չէ իսկական նկարչի համար: Նկարիչը պետք է ասելիք ունենա մարդկանց, պետք է կարողանա գծերի և գույների միջոցով մի նոր, իր աչքերով տեսած աշխարհը ցույց տալ բոլորին: Արայի դիմանկարները կենդանի ու արտահայտիչ են: Դիտողի աչքերի մեջ նայող այդ կանաչ մազերով և կարմիր հոնքերով տղամարդիկ թղթի վրա ապրում են ամեն մեկը իր անհատականությամբ: Գուցե, իրոք, այսօրվա ընկալմամբ կանաչ մորուքով ու կանաչ մազերով պետք է լինեն հին թագավորները, որ անցել գնացել, մամռոտել են: Կամ տղամարդկային դեմքի վրա ուժի արտահայտությո՞ւն չէ արդյոք, կարմիր աչքերը և հոնքերը:



Ցուցահանդեսը դիտելուց հետո, երբ համոզվել էի, որ Արան իսկապես նկարիչ է՝ խոստումնալի ապագայով, ուզեցի հանդիպել նրան: Հաջորդ օրը մեր զրույցի ժամանակ պարզվեց, որ Արան նաև... երաժիշտ է, սովորում է Չայկովսկու երաժշտական դպրոցի դաշնամուրի բաժնի չորրորդ դասարանում: Ուսուցչուհի Ահարոնյանը համոզված է, որ նա երաժիշտ պետք է դառնա, միմիայն երաժիշտ:

— Ուզում էի ընդունվել Կոջոյանի անվան նկարչական դպրոցը,— ասում է Արան,— բայց պարզվեց, որ այդ դեպքում պետք է թողնել երաժշտականը: Իսկ ես երաժշտություն շատ եմ սիրում: Երաժշտությունը ինձ օգնում է նկարել: Հանդարտ երաժշտության տակ գույները ավելի մեղմ, հանդարտ եմ զգում և այդպես նկարում: Ուժեղ, ռիթմիկ երաժշտությունը վառ գույներ ունի: Վերջերս հայրիկիս հետ այցելեցի Մարտին Պետրոսյանի ցուցահանդեսը: Ա՜յ թե ես այդպես նկարել իմանայի՜... Հայրիկս ամեն ինչ ինձ համար անում է, ցուցահանդեսներ է տանում, ֆլոմաստերներ գնում: Երբ փոքր էի, սիրում էի մեքենա նկարել, հիմա արդեն մարդ եմ նկարում՝ թագավորներ, պրոֆեսորներ, որովհետև մորուքավորներին հետաքրքիր է նկարել:

Հարցրեցի Արային, թե ինչ է դառնալու՝ երաժի՞շտ, թե՞ նկարիչ: Պատասխանեց՝

— Ավելի շուտ՝ դերասան: Եվ կխաղամ կամ շատ չար մարդկանց դերեր, կամ շատ բարի:

Արայից բաժանվելուց հետո ես երկար մտածում էի՝ երբ մարդը 11 տարեկան է, նա մե՞ծ է արդեն, թե՞ դեռ փոքր...




## Ո՞Վ ԿՀԱՂԹԻ

Մարդուն հատուկ է ավելի ուժեղ, տոկուն, ճարպիկ և արագավազ դառնալու ձգտումը: Իսկ ինչպես հայտնի է, բարձր ցուցանիշները ծնվում են մրցության ժամանակ: Մարդիկ մրցում են ոչ միայն իրար հետ: Անցյալից հայտնի են դեպքեր, երբ մարդը մրցության մեջ է մտել ձիերի ու որսաշների հետ, իսկ մի ամերիկացի հեծանվորդ էլ «մարտահրավեր» է նետել ճեպընթաց գնացքին: Նման հետաքրքիր մրցումներ տեղի են ունենում նաև մեր օրերում: Անգլիացի Մակդոնալդ Բեյլին, օրինակ, հիանալի արդյունք է ցույց տալիս նապաստակին հետապնդելիս (ճիշտ է, նապաստակը էլեկտրամեխանիկական է): Մի այլ վարորդ, քենիացի Ստեֆանո Անտարն վայրկյանի հարյուրերորդական մասով է միայն պիջում աշխարհի ամենաարագավազ կենդանուն՝ վագրակատվին:



## ՆՈՐ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

Տասը ամիս շարունակ Խաղաղ օվկիանոսի հարավային մասերում լողում էր ամերիկյան «Մելվիլ» գիտա-հետախուզական նավը: Նավի վրա յոթ երկրների գիտնականներ միջազգային «Ջիոսեկ» ծրագիրն էին իրագործում, որի նպատակն է՝ առավել լավ ուսումնասիրել Համաշխարհային օվկիանոսի քիմիական կառուցվածքը: Երբ նավը մոտեցավ անհյուրընկալ սառցե աշխարհամասի ափերին, անսպասելի հայտնագործություն կատարվեց: Մինչև այժմ այն կարծիքը կար, որ Անտարկտիդայում սկիզբ առնող սառը ջրերը բարեխառն գոտիներ են հասնում ներքին մղումներով, ընդհատ-ընդհատ, այն էլ նեղ լեզվակի պես, որը «լիզում» է ջրավազանի միայն արևմտյան մասերը: Եվ հանկարծ բոլոր չափումների՝ ջերմաստիճանի, քիմիական, երկրաֆիզիկական տվյալները հերքեցին այդ կարծիքը: Զարմացած օվկիանոսագետները տեսան մոտ 1200 մղոն լայնությամբ սառը հոսանք, որը երբեք չէր «ճողփում» և չէր «ընդհատվում», այլ ընդհակառակը, բավականին հաստատուն և բուռն «բնավորություն» ուներ: Հոսանքի արագությունը շատ փոքր է. որպեսզի Անտարկտիդայի ափերից հասնի Խաղաղ օվկիանոսի կենտրոնական շրջանները, որտեղ այն լրիվին ցրվում-անհետանում է, պահանջվում է համարյա հազար տարի: Համենայն դեպս, չնայած այդ դանդաղաշարժությանը, նոր հոսանքը խոշորագույններից մեկն է Համաշխարհային օվկիանոսում: Այն շատ ուժեղ ազդում է ողջ ջրային ավազանի վրա, սրա միջոցով էլ՝ մթնոլորտի ստորին շերտերի, որտեղ ձևավորվում է մոտ ու հեռու լայնությունների եղանակը: Այդ պատճառով էլ, ոչ միայն օվկիանոսագետները, այլև օդերևութաբանները հետաքրքրությամբ սպասում են հոսանքի մասին նոր տեղեկությունների:

## ՄԱՐԴ ՔԱՂԱՔԸ

Իտալական փոքրիկ Կամպանելո-Մոնտե քաղաքը ոչնչով աչքի չի ընկնում. ինչպես նման մյուս բնակավայրերում, այստեղ ևս կան բնակելի տներ, խանութներ, սրճարաններ և այլն: Նշանավոր դառնալու պատճառն այլ է. քաղաքը բնակիչներ չունի: Ավելի ճիշտ, համարյա չունի: Բնակչությունը կազմված է... մի մարդուց՝ ութսունչորսամյա Աուգուստո Ռիելոյից: Մնացած քաղաքացիները աշխատանք փնտրելու համար՝ քիչ-քիչ հեռացել են տարբեր ուղղություններով, այնպես որ Կամպանելո-Մոնտե պատահաբար եկող այցելուները հնարավորություն ունեն ազատ թափառելու բոլորովին դատարկ փողոցներում: Ծեր Ռիելոն ո՛չ հեռուստացույց ունի, ո՛չ ռադիո, և նա արտակարգ ուրախանում է պբոսաշրջիկներով, քանի որ հնարավորություն է ստեղծվում զրուցելու և հպարտանալու իր անսովոր վիճակով: Չէ՞ որ այժմ նա և՛ պահակ է, և՛ ոստիկան, և՛ դատավոր, և՛ նույնիսկ, երբեք չէր կարող մտքովն անցնել, քաղաքագլուխ:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



*Ճանաչի՛ր և պահպանի՛ր մեր բնաշխարհի հազվագյուտ ու անհետացող բույսերը*

# ԶԱՆԳԵԶՈՒՐՅԱՆ ՏԱՆՁԵՆԻ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Այս հազվագյուտ, գիտության համար խիստ արժեքավոր ծառատեսակը հանդիպում է միայն Մեղրու շրջանի Մազրա գյուղի շրջակայքում: Առաջին անգամ նկարագրել է բուսաբան Մալեևը՝ 1939 թվականին:

Խոշոր ծառ է: Պատկանում է վարդազգիների ընտանիքին: Ընձյուղները անփուշ են, ծածկված մուգ դարչնագույն կեղևով: Բազմամյա ճյուղերի վրա կեղևը մոխրագույն է: Տերևները էլիպսաձև կամ լայն նշտարաձև են, 5—9 սմ երկարությամբ և 3—5 սմ լայնությամբ: Ծաղիկները հավաքված են սպիտակ փնջերում: Պտուղները, որոնք նույնպես 7—8-ական փնջեր են կազմում, մանր են, 1,5 սմ տրամագծով, չափազանց ամուր պտղամըսով:

Աճում է վերին լեռնային գոտում, անտառների բացատներում և եզրերում: Գերադասում է խոնավությամբ ապահովված հարուստ հողերը:

Մի ժամանակ զանգեզուրյան տանձենին բավականին լայն տարածում է ունեցել Մեղրու, Ղափանի և Գորիսի բարձրադիր շրջանների անտառներում: Սակայն ինտենսիվ կերպով ոչնչացվելու հետևանքով այս տեսակը աստիճանաբար վերացել է և ներկայումս հանդիպում է աննշան քանակությամբ: Համարվում է անհետացման եզրին գտնվող ծառատեսակ, գրանցված է «Կարմիր գրքում» և ենթակա է առաջնահերթ պաշտպանության:

Այդ գործում հատկապես մեծ անելիքներ ունեն Մեղրու շրջանի պիոներ-դպրոցականները:




Լույս է տեսնում 1923 թվականից

№ 2 փետրվար 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*ԱՐԱ ՀԱՅԹԱՅԱՆԻ*




«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 05019: Պատվեր 50: Տպաքանակ՝ 53306: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 8/II 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:



# ՁՄԵՌՆ ԱՆՏԱՌՈՒՄ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ* — *Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Արդեն ձմեռ է. անտառն է ննջում,
Անտառում չկա ոչ մի ելևէջ,
Եվ արջը քնած իր խոնավ որջում՝
Լիզում է թաթը երազների մեջ:

Ահա մի որսկան ծառերի տակով,
Փափուկ ձյան վրա քայլում է անձայն,
Ֆոտոապարատն հեռադիտակով
Նա գործ է ածում որպես հրացան:

Նա մի անսովոր որսորդ է զգույշ,
Ձմռան գույների, ձմռան պատկերի,
Զբոսնում է նա անտառի գրկում,
Ականջն անտառի արձագանքներին:

Նա հեռվից-հեռու բռնում է նշան,
Եվ չրխկում է ապարատն անտես,
Ահա նապաստակն, աչքերը պլշած,
Նկարվելու է պատրաստվել կարծես:

Քնած անտառի ձայներն է լսում
Եվ շրշյունները՝ չորացած խոտի,
Գայլի ծագերի կլանչն է լսում.
Նրան ամեն ինչ թվում է մոտիկ:

Տեսնում է, ոնց է ծառի փչակից
Փոքրիկ սկյուռը գլուխը հանում,
Կենգուրուի պես մայրական պարկից,
Իր մայր փչակից նա չի հեռանում:

Եվ նա դիտում է, ոնց է եղջերուն
Աչքերը լցնում կարոտի կանչով,
Ոնց է իր հորթի դունչը համբուրում,
Անտառը լցնում սիրո բառաչով:

Եվ նա լսում է, թե ձորակի մեջ
Ոնց է կարկաչում առուն սառցի տակ,—
Անտառում չկա ոչ մի ելևէջ,
Անտառում միայն ձյուն է սպիտակ...